Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 10 ՄԱՅԻՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*



# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ 7-ՐԴ ՍԵՍԻԱՆ

*Մայիսի 7-ից մինչև 10-ը մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան։ Երկու պալատների՝ Ազգությունների Սովետի և Միության Սովետի նիստերը միաձայն հաստատեցին սեսիայի հետևյալ օրակարգը. 1. Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, 2. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերի հաստատումը։*

*Օրակարգի առաջին հարցի մասին սեսիայում զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովը։*

*Ինչպես հայտնի է, մինչև սեսիայի քննարկումը, ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները դրվեցին համաժողովրդական քննարկման։ Ամենուրեք այդ քննարկումները գնացին բարձր կազմակերպվածության և*





մասսաների աննախընթաց ակտիվության պայմաններում։ Երկրի բոլոր արտադրական ձեռնարկություններում, նորակառույցներում, գիտական և հասարակական կազմակերպություններում, կոլտնտեսություններում, ՄՏՍ կայաններում և այլուր, ավելի քան մեկ ամսվա քննարկման ընթացքում տեղի են ունեցել 514 հազարից ավելի ժողովներ, որոնց մասնակցել են 40 միլիոն 820 հազար մարդ։ Դրանցից ավելի քան 2 միլիոն 300 հազար հոգի հանդես են եկել բազմաթիվ առաջարկություններով և դիտողություններով։ Այս հարցերի քննարկումը լայնորեն լուսաբանվել է մեր մամուլում։ Կենտրոնական և տեղական թերթերում, ինչպես նաև ամսագրերի էջերում հանդես են եկել ավելի քան 68 հազար մարդ։

Այս հանգամանքը ցույց է տալիս թե մեր պարտիան ու կառավարությունը ինչպիսի կարևոր նշանակություն են տալիս արդյունաբերության ու շինարարության կառավարումն է՛լ ավելի բարելավելու և կատարելագործելու հարցին։ Մյուս կողմից այդ հարցի մասսայական, համաժողովրդական քննարկումը կրկին անգամ ցույց տվեց մեր սովետական սոցիալիստական հասարակարգի խա-



կական, խորը դեմոկրատիզմը, նրա բարձր կենսունակությունը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը իր զեկուցման մեջ բազմաթիվ օրինակներով ու փաստերով ցույց տվեց, որ արտադրության ներկա հսկայական մասշտաբների և հետագայում կատարվող խնդիրների պայմաններում արդյունաբերության և շինարարության կառավարման հին ձևերն ու մեթոդները լուրջ դժվարություններ են ստեղծում, որ մինիստրությունների ու գերատեսչությունների միջոցով արտադրության կառավարման գոյություն ունեցող ձևերը առաջացնում են շատ թերություններ։ Այդ իսկ պատճառով ներկայումս մեր պարտիան խնդիր է դնում արմատապես բարելավել արդյունաբերության և շինարարության կառավարումը, որը հնարավորություն կտա ավելի հստակորեն ու արդյունավետ ձևով վարել ժողովրդական տնտեսությունը, կբարձրացնի երկրի նյութական-տնտեսական հզորությունը, աշխատավոր մասսաների կենսամակարդակը։

Սովետական ժողովուրդը իր հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, պատմական ամենակարճ ժամանակամիջոցում համառ ու հերոսական աշխատանքի շնորհիվ հետամնաց ագրարային եր-

կիրը վերածեց առաջավոր արդյունաբերության, ծանր ինդուստրիայի երկրի։ Ներկայումս Սովետական Միությունը իր տնտեսության զարգացմամբ հասել է կապիտալիստական առավել զարգացած երկրներին, ինչպես օրինակ՝ Անգլիային, Ֆրանսիային, Գերմանիային և իր արդյունաբերական արտադրության մակարդակով բռնում է երկրորդ տեղը ամբողջ աշխարհում։ Նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ Սովետական Միությունում արդյունաբերական արտադրության ծավալը մինչև 1957 թվականը աճեց ավելի քան 30 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ գրեթե չորս անգամ։ Այժմ մեր տնտեսական հիմնական խնդիրն է՝ բնակչության ամեն մի շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնել և անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներից և այլ կապիտալիստական երկրներից։

Մեր Հայրենիքը խոշոր հաջողությունների է հասել նաև սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Յուրացվել են միլիոնավոր հեկտարներով նոր հողեր, բարձրացել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը, ընդարձակվել է նրանց ցանքատա-



րածությունը։ Գյուղատնտեսությունը հագեցվել է ժամանակակից, բարձր արտադրողականություն ունեցող մեքենաներով՝ կոմբայններով, տրակտորներով, կալսիչներով և այլ մեքենաներով։

Վերջին տարիներում, առանձնապես պարտիայի XX համագումարի որոշումներից հետո, մեր երկրում խոշոր առաջխաղացում է ունեցել սոցիալիստական անասնաբուծությունը։ Պարտիայի և կառավարության ձեռք առած կոնկրետ միջոցառումների շնորհիվ զգալի չափով բարձրացել է անասնաբուծության մթերատվությունը։

Ներկայումս մեր երկրում կան ավելի քան 200 հազար պետական արդյունաբերական ձեռնարկություններ և 100 հազարից ավելի նորակառույցներ։ Արդյունաբերության հետագա բուռն վերելքը, առաջին հերթին ծանր արդյունաբերության ու նրա հիման վրա թեթև ու պարենային մթերքների արդյունաբերության զարգացումը, որոնք նպաստելու են սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի է՛լ ավելի բարձրացմանը, պահանջում են կառավարման նոր ձևեր ու մեթոդներ։ Պարտիան ու կառավարությունը գտնում են, որ արդյունաբերության և շինարարության ղե-

կավարման ծանրության կենտրոնը պետք է փոխադրվի տեղերը՝ ձեռնարկություններին և կառույցներին ավելի մոտ։ Դրա համար պահանջվում է ճյուղային մինիստրությունների և գերատեսչությունների միջոցով կատարվող կառավարումից անցնել ըստ տերիտորիալ հատկանիշների կառուցված կառավարման։

Պարտիան գտնում է, որ հաղթահարելով գերատեսչական պատնեշները, արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելով նոր պահանջներին համաձայն, լայն հնարավորություն կստեղծվի իրականացնել արտադրության մասնագիտացումը և կոոպերացումը, ավելի լայն մասշտաբով կօգտագործվի ժողովրդական տնտեսության մեջ եղած բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։

Արդյունաբերության և շինարարության նախատեսված վերակառուցումը է՛լ ավելի է ընդլայնում միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, որոնք բխում են պարտիայի XX համագումարի դիրեկտիվներից։ Վերջին ժամանակներս ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը ռեսպուբլիկաների իրավասությանը հանձնեցին մոտ 15 հազար արդյունաբերական ձեռնարկություն, ինչպես նաև գետային և ավտոմոբիլային տրանսպորտը։



Տնտեսական շինարարության ասպարեզում ռեսպուբլիկաներին տրվող լայն իրավունքները, կնպաստեն մասսաների նախաձեռնության և ստեղծագործական ակտիվության բարձրացմանը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում քննարկվող՝ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը վերակառուցելու հարցը վիթխարի նշանակություն ունի նաև մեր ռեսպուբլիկայի համար։

Սովետական Հայաստանում պարտիայի և կառավարության հոգատարության շնորհիվ կառուցվել են հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ։ Առաջ են եկել արդյունաբերության միանգամայն նոր ճյուղեր՝ քիմիական, հաստոցաշինական, էլեկտրատեխնիկական, ռադիոտեխնիկական, գործիքաշինության և ավտոմատացման միջոցների, շինանյութերի, սննդի և այլն։ Ստեղծված է ժողովրդական տնտեսության էներգետիկ բազա։ Ինչպես հայտնի է, նոր հնգամյակում մեր ռեսպուբլիկայի առջև մեծ հեռանկարներ են բացվում։ Արդյունաբերությունը պետք է աճի 70 տոկոսով, իսկ արդյունաբերության մի շարք ճյուղեր 2-ից մինչև 6 անգամ։ Ինքնին հասկանալի է, որ ռեսպուբլիկայի ար-

*դյունաբերության այդպիսի աճը կազմակերպչական մեծ աշխատանք է պահանջում։*

*Ուստի ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում ընդունված օրենքը կարևորագույն նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար։*

*Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան ընկ. Ն. Ս. Խրուշչովի եզրափակման խոսքից հետո միաձայն ընդունում է հետևյալ օրենքները՝ «Օրենք արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» և «Օրենք ՍՍՌՄ Կոնստիտուցիայի տեքստում փոփոխություններ ու լրացումներ մտցնելու մասին»։*

*Սեսիան օրակարգի երկրորդ հարցում լսեց և հաստատեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության վեցերորդ սեսիայից հետո ընդունած Հրամանագրերը։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիան ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման առթիվ ընդունեց կարևոր որոշումներ, որոնց սովետական ժողովուրդը դիմավորեց մեծ խանդավառությամբ։ Պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը անշեղորեն կկենսագործի այդ որոշումները մեր Հայրենիքի հզորությունն ավելի բարձրացնելու համար։*

---

## ԵՐԵԽԱՆԵՐԻ ԿՅԱՆՔԻ ՈՒ ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

(Տպագրվում է Երեխաների պաշտպանության միջազգային օրվա առթիվ)

ՄԱՐՈ ՄԵԼԻՔՅԱՆ
ՀԿՊ Երևանի Քաղաքային Կոմիտեի դպրոցական բաժնի վարիչ

*Ամեն տարի մեր երկրի ժողովուրդները ամբողջ պրոգրեսիվ մարդկության հետ նշում են Երեխաների պաշտպանության միջազգային օրը՝ հունիսի 1-ը։*

*Երեխաների պաշտպանության համար սկսված շարժումը հենց սկզբից պայքարի բնույթ ստացավ։ Պայքար՝ հանուն երեխաների ապահով կյանքի, ամբողջ աշխարհում երկարատև խաղաղություն հաստատելու, երեխաների երջանիկ ապագան ապահովելու համար։*

*1952 թվականին կայացած Կանանց միջազգային կոնֆերենցիայի Դիմումի մեջ ասված է.*

*«... Թող հունիսի 1-ը՝ Երեխաների պաշտ-*

պանության միջազգային օրը աշխարհի բոլոր ժողովուրդների միջև խաղաղության, վստահության ու եղբայրության հզոր ցույցի օր դառնա ամեն մի քաղաքում, ամեն մի գործարանում, ամեն մի գյուղում»։

Մայրերի համաշխարհային կոնգրեսը, որ 1955 թվականի հուլիսին կայացավ Լոզանում և որին մասնակցում էին 66 երկրների ներկայացուցիչներ, իր մանիֆեստի մեջ ասում է.

«Բոլոր երկրների մայրե՛ր, մենք չենք ցանկանում, որ մեր զավակները սպանեն իրար։ Դաստիարակենք մեր երեխաներին այն ոգով, որ սիրեն բոլոր ժողովուրդներին և թույլ չտանք, որ նրանց հոգին աղտոտեն ատելության կուլտով ու ռասայական նախապաշարմունքներով։

Բոլոր երեխաները՝ սպիտակ, դեղին թե սև՝ հավասար են, կյանքի հավասար իրավունք ունեն, նրանց բոլորին անհրաժեշտ է պաշտպանել»։

Սովետական ժողովուրդն այս տարի երեխաների պաշտպանության միջազգային օրը դիմավորում է քաղաքական ու ստեղծագործական հսկայական վերելքով։ Մեր երկիրը պատրաստվում է հանդիսավորապես դիմավորելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը, մի ռևոլյու-



ցիա, որը մարդկության պատմության մեջ բաց արեց նոր դարաշրջան՝ կոմունիզմի դարաշրջանը։

Մեր երկրում սովետական իշխանության գոյության առաջին իսկ օրերից երեխաները շրջապատված են մեծագույն հոգատարությամբ։ Ամեն լավ բան երեխաներին— այս է մեր երկրի օրենքը։ Մեր պետությունը երեխայի մասին հոգում է նրա ծննդյան օրվանից սկսած։

ՍՄԿԿ 20-րդ համագումարի որոշումներում մի անգամ ևս ցուցադրված է պարտիայի ու կառավարության հոգատարությունը աճող սերնդի նկատմամբ։ Վեցերորդ հնգամյա պլանով մի շարք միջոցառումներ են նախատեսված մայր-կանանց աշխատանքի ու կենցաղի և երեխաների դաստիարակության հետագա բարելավման ուղղությամբ։ Այդ միջոցառումների մեծ մասն արդեն կենսագործվում է. ավելացված է հղիության ու ծննդաբերության առթիվ տրվող արձակուրդը, բարձրացվել են պետական կենսաթոշակները, վերացված է ուսման վարձը, կրճատվել է անչափահասների աշխատանքային օրը, բացվել են նոր գիշերօթիկ դպրոցներ, կազմակերպվել են երկարացված օրերի դասարաններ, իջեցվել են ապրանքների գները

և մի շարք այլ միջոցառումներ, որոնք հնարավորություն են տալիս բարելավելու մեր երեխաների կենցաղը։

Մեր երկրում մայրությունը փառքի ու հերոսության լուսապսակով է շրջապատված։ «Հերոսուհի մայր» պատվավոր կոչման արժանացել են ավելի քան 49 հազար կին, որոնք 10 և ավելի երեխա են դաստիարակել, շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են մոտ 5 միլիոն կին։

Ամեն տարի Սովետական Միությունում մոտ 6 միլիոն երեխա ամռանը հանգստանում են պիոներական ճամբարներում, մանկապարտեզների ու մանկամսուրների ամառանոցներում, սանատորիաներում, տուրիստական բազաներում։

ՍՍՌՄ-ում մոտ 2 հազար պիոներական պալատ ու տուն կա։ Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան պատանի պիոներների կազմակերպության 35-ամյակի կապակցությամբ դրանց թիվն ավելի ևս կմեծանա։ Գործում են պատանի տեխնիկների 193 կայան, պատանի բնասերների 169 կայան, էքսկուրսիոն-տուրիստական 102 կայան, մանկական 575 սպորտային դպրոց, 4.000 մանկական գրադարան, չհաշված մասսայական գրադարաններին կից մանկական բաժինները,



140 պետական մանկական թատրոն։ Այս բոլոր արտադպրոցական հիմնարկությունները ծնողներին ու դպրոցներին օգնում են դաստիարակելու կոմունիզմ կառուցող նոր քաղաքացիներ։ Մինչդեռ նախառևոլյուցիոն Ռուսաստանում դպրոցներում սովորում էր երեխաների միայն մեկ հինգերորդ մասը, այժմ Սովետական Միությունում սովորում են բոլոր երեխաները։

1955 թվականին Հնդկաստանի կանանց դելեգացիայի անդամները, այցելելով ՍՍՌՄ, ասում էին. «Մենք ձեր երեխաներին տեսանք զանազան տներում, մանկամսուրներում, մանկապարտեզներում, պիոներական պալատներում ու ճամբարներում։ Մարդ հիանում է տեսնելով, թե ինչպիսի սիրով ու հոգատարությամբ են դաստիարակվում նրանք Սովետական Միության ապագա քաղաքացիներ դառնալու համար»։

Մեր պարտիան՝ հավատարիմ Իլյիչի պատգամներին՝ լենինաբար է հոգ տանում մեր մանուկների կյանքի համար։ Սովետական մարդը ի սեր երեխաների երջանկության նույնիսկ իր կյանքը չի խնայում։ Շատ ու շատ դեպքեր կան, երբ սովետական քաղաքացիներն ու քաղաքացուհիները իրենց կյանքը չխնայելով փրկում են ջրում խեղդ-

վող երեխաներին, դուրս են հանում նրանց հրդեհի բոցերի միջից։

Սովետական Հայաստանի երեխաներն էլ երջանիկ կյանքով են ապրում մեր ծաղկուն ռեսպուբլիկայում։ Սովետական իշխանություն հաստատվելուց առաջ կարո՞ղ էր արդյոք հայ մայրը երազել այնպիսի մի երջանկություն, որպիսին այժմ ունեն մեր երեխաները։

Եթե 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 495 դպրոց, որտեղ սովորում էին 34 հազար աշակերտ, ապա այժմ, չհաշված բանվոր ու գյուղացի երիտասարդության երեկոյան դպրոցները, մասնագիտական միջնակարգ դպրոցներն ու տեխնիկումները, մենք ունենք 1197 հանրակրթական դպրոց, որտեղ սովորում են մոտ 300 հազար աշակերտ։

Հենց միայն մեր փոքրիկ ռեսպուբլիկայում վերջին 10 տարվա ընթացքում բազմազավակ ու միայնակ մայրերին օգնելու համար ծախսըվել է մոտ 600 միլիոն ռուբլի։ Երևան քաղաքի բնակչուհի «Հերոսուհի մայր» Մաղիկ Ավետիսյանը իր 12 երեխաներին խնամելու համար պետությունից ստացել է 70.000 ռուբլի նպաստ, իսկ Հռիփսիմե Առաքելյանը 11 երեխայի համար՝ 56.280 ռուբլի։ Հերո-



սուհի մայրերի թիվը մեր ռեսպուբլիկայում 1000-ից ավելի է։

Երեխաների նկատմամբ մեր պարտիայի հոգատարությունը ոգեշնչող օրինակ է հանդիսանում ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար։ Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակից առաջ Չինաստանի քաղաքներում ու գյուղերում հազարավոր երեխաներ սովամահ էին լինում, երեխաների 90 տոկոսը բոլորովին չէր սովորում։ Իսկ այժմ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում երեխաներն ունեն դպրոցներ, պիոներական տներ ու պալատներ, մանկական գիտական կայաններ, ստադիոններ ու կինոթատրոններ։ Չին երեխաներն ունեն մանկական գրականության հրատարակչություն, որը տարեկան մի քանի տասնյակ միլիոն օրինակ մանկական գրքեր է հրատարակում։ Մի քանի տարվա ընթացքում սովետական հեղինակներից 776 անուն մանկական գիրք է չինարեն թարգմանվել ու հրատարակվել 10 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։

Բուլղարիայում ժողովրդական իշխանության տարիներին կառուցվել է ավելի քան 1000 նոր դպրոց։ Լեհաստանում կառուցվել է 1514 դպրոց, 500 մանկապարտեզ և 258 մանկամսուր։ Գերմանական Դեմոկրատական

Ռեսպուբլիկայում, Ալբանիայում, Հունգարիայում, Չեխոսլովակիայում, Ռումինիայում, որոնք հաստատորեն սոցիալիզմի ուղիով են ընթանում, երջանիկ կյանք է ստեղծվել աճող սերնդի՝ մանուկների համար։

Կապիտալիստական երկրներում տարեցտարի ավելի ու ավելի է վատանում մայրերի ու մանուկների վիճակը, որը հետևանք է ժողովրդական մասսաների շահագործման ուժեղացման, սպառազինության մրցավազքի հետ կապված հարկերի ավելացման, գործազրկության աճման։

Բայց ոչ մի բանի հետ չի կարելի համեմատել երեխաների ու անչափահասների զարհուրելի վիճակը գաղութային և կախյալ երկրներում։ Այստեղ երեխաները դատապարտված են ստրկական աշխատանքի, վաղաժամ մահվան՝ քաղցից ու հիվանդություններից։

Էկվադորում բոլոր բանվորների մեկ երրորդը կազմում են մինչև 12—13 տարեկան երեխաները, որոնք աշխատում են օրական 10—12 ժամ։ Լատինական Ամերիկայում ըստ պաշտոնական տվյալների ավելի քան 14 միլիոն երեխաներ, որ կազմում է բոլոր երեխաների 75 տոկոսը, դպրոց չեն հաճախում։ Ճապոնիայում, ինչպես «Ավանգարդ»



թերթն է հաղորդում, շունն արժի 50 դոլար, կատուն՝ 30, իսկ չահել աղջիկը՝ 22 դոլար։

1955 թվականին ԱՄՆ-ի սենատային իրավաբանական հանձնաժողովը հրապարակել է մի հաղորդագրություն, որից երևում է, որ տարեկան մոտ մեկ ու կես միլիոն երեխա քրեական պատասխանատվության է ենթարկվում։ Այս փաստաթղթի հեղինակները ենթադրում են, որ 1960 թվականին այս թիվը կհասնի մինչև երկու միլիոնի։

Արևմտագերմանական «Դի Շուլե» ամսագիրը հաղորդում է, որ Բոննի կառավարությունը տարեկան ծախսում է՝ մեկ ոստիկանի վրա 9640 մարկ, մեկ ոստիկանական շան վրա՝ 360 մարկ, իսկ մեկ դպրոցական աշակերտի վրա՝ 40—60 մարկ։

Անցյալ տարի տեղի ունեցած մի շարք իրադարձություններ, ինչպես Եգիպտոսի վրա կատարած հարձակումը, այնպես էլ Հունգարիայի հակաևոլյուցիոն խռովությունը ցույց են տալիս, որ «սառը պատերազմի» կողմնակիցները շարունակում են ճոճվել անդունդի եզրին՝ սրելով միջազգային իրադրությունը։ Նոր պատերազմի ամերիկյան հրձիգները Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը ճնշելու նորանոր պլաններ են ստեղծում։ Էյզեն-

հուների պլանը, սպառազինության մրցավազքը, Եվրոպայում, Աֆրիկայում ու Ասիայում ատոմային սպառազինության նորանոր բազաներ ստեղծելը ահեղ վտանգ են խաղաղության գործի համար ամբողջ աշխարհում։

ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան չեն ընդառաջում Սովետական Միության առաջարկությանը՝ ատոմային ռումբի փորձարկումներն արգելելու մասին հինգ մեծ պետությունների միջև պայմանագիր կնքելու վերաբերյալ։

Այս տարվա ապրիլ ամսին Բեռլինում կայացավ Կանանց միջազգային Ֆեդերացիայի բյուրոյի նիստը, որը քննարկեց միջազգային դրության հարցերը։ Ֆեդերացիայի բյուրոյի կողմից աշխարհի բոլոր կանանց ուղղված դիմումի մեջ ասված է.

«Ամբողջ աշխարհը տագնապով է հետևում ատոմային ու միջուկային զենքի շարունակվող փորձարկումներին։ Ուժեղանում է սպառազինության մրցավազքը, ատոմային ու միջուկային զենք է կուտակվում։ Նյութական միլիարդավոր հարստությունները, որոնք կարող էին օգտագործվել բարեկեցության ու պրոգրեսի համար, օգտագործվում են պատերազմի ու ավերածությունների նախապատրաստության համար»։

Խաղաղության Համաշխարհային Խորհուր-



դը հանդես է եկել ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները դադարեցնելու պահանջով։

«Այսօր պայքարը խաղաղության համար, ավելի քան անցյալներում, պայքար է զինաթափման համար։

Կանա՛յք, մայրե՛ր, պաշտպանեցե՛ք երեխաների կյանքը, պաշտպանեցե՛ք նրանց երջանկությունը»։

Խաղաղության ու զինաթափման համար, ատոմային ու ջրածնային զենքի արգելման համար ծավալված պայքարն ընդգրկել է ինչպես Արևմուտքի, այնպես էլ Արևելքի բոլոր երկրները։ Այդ պայքարը դարձել է այնպիսի ռեալ ուժ, որն ընդունակ է փակելու պատերազմի ճանապարհը։ Այդ պայքարում պատվավոր տեղ են գրավում նաև մայրերը, որոնք ոտքի են ելել երեխաների կյանքը պաշտպանելու։

Սովետական Միության ու եղբայրական դեմոկրատական երկրների կանայք, որոնք սոցիալիզմի կառուցման ուղին են բռնել, խաղաղության, ժողովուրդների եղբայրության, մեր երեխաների պայծառ երջանկության ու ապագայի համար մղվող պայքարի առջևից են ընթանում։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԿԱԹԻ ԵՎ ՄՍԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Գ. ՄԿՐՏՉՅԱՆ

*Շահումյան շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունում գովեստով են խոսում ագիտատոր Վազգեն Մնացականյանի մասին։ Նա կոլտնտեսականների համար սիստեմատիկաբար հետաքրքիր և բովանդակալից զրույցներ է կազմակերպում։ Օրերս ագիտատորը ֆերմայի կարմիր անկյունում կոլտնտեսականների հետ զրույց ունեցավ կաթի, մսի և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման մասին։*

*— Վերջին մի քանի տարվա ընթացքում,— ասաց նա,— մեր պարտիան ու կառավարությունն անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության ավելացման համար ձեռնարկեցին մի շարք խոշոր միջոցառումներ։ Այդ միջոցառումների իրականացման շնորհիվ կոլտնտեսություններն ու սովխոզները որոշակի հաջողություններ են ձեռք բերել*



*անասնաբուծության զարգացման և նրա մթե-
րատվության ավելացման, հատկապես կաթի
արտադրությունն ավելացնելու ասպարեզում։
Օրինակ. երկրի կոլտնտեսություններում 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, համախառն կաթնատվությունն աճեց 32 տոկոսով, իսկ 1953 թվականի համեմատությամբ գրեթե 2 անգամ։ Եթե 1953 թվականին մեկ կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում ավելացավ 67 կիլոգրամով, ապա երեք տարում՝ 1953-ից մինչև 1956 թվականը՝ 585 կիլոգրամով, իսկ միայն 1955—1956 թ. թ. տնտեսական տարում 337 կիլոգրամով։ 1956 թվականին պետությանը հանձնվեց 3,8 միլիոն տոննա կաթ, որը 25 տոկոսով ավել էր 1955 թվականի համեմատությամբ։*

*Մսի արտադրության բնագավառում նույնպես որոշ հաջողություններ ձեռք բերվեցին։ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ պետությունը բոլոր աղբյուրներից գնեց և մթերեց 9 տոկոսով ավելի անասուն։ Այնուհետև ագիտատոր Վ. Մնացականյանն ունկնդիրներին պատմեց անասնաբուծության զարգացման գործում մեր ռեսպուբլիկայի և Շահումյան շրջանի կոլտնտեսությունների ձեռք բերած հաջողությունների մասին։ Նա*

միաժամանակ նշեց, որ անասնաբուծական մթերքների արտադրության ներկա մակարդակը չի բավարարում մեր ժողովրդի օրըստօրե աճող պահանջմունքները։ Ահա թե ինչու մեր պարտիան գյուղատնտեսության աշխատողների առջև խնդիր է դրել օգտագործել բոլոր ներքին ռեզերվները և լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը կաթի և մսի արտադրության հետագա ավելացման համար, այն հաշվով, որ 1957 թվականին ապահովվի աշխատավորների կարիքների լրիվ բավարարումն անարատ կաթով, կաթնամթերքներով և կենդանական յուղով, որ յուրաքանչյուր ռեսպուբլիկա, մարզ, երկրամաս, շրջան, սովխոզ և կոլտնտեսություն խիստ ավելացնի մսի արտադրությունը և հանձնումը պետությանը։

Խոսելով իրենց կոլտնտեսության հաջողությունների և կոլտնտեսականների առաջիկա անելիքների մասին, ագիտատորը կոնկրետ օրինակներով ցույց տվեց, թե ինչպես սկսած 1950 թվականից կոլտնտեսությունում անընդհատ ավելացել է կաթի և մսի արտադրությունը։ Օրինակ. 1956 թվականին կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրեց 633 ցենտներ կաթ, 67,3 ցենտներ միս (սպան-



դանոցային քաշով), այդ թվում 35 ցենտներ խոզի միս։ Մեկ կովի միջին կաթնատվությունը կազմեց 3.340 կիլոգրամ, յուրաքանչյուր ոչխարից ստացվեց 2,9 կիլոգրամ բուրդ, մեկ ցենտներ կաթի արտադրության ինքնարժեքը կազմեց 93 ռուբլի 52 կոպեկ, իսկ ապրանքային գինը՝ հաշված պետական մանրածախ գներով, մոտ 250 ռուբլի։ Չնայած ինքնարժեքը բարձր է, բայց նախորդ տարիների համեմատությամբ զգալիորեն իջել է։ Կոլտնտեսությունը 1956 թվականին միայն անասնաբուծությունից ստացավ մեկ միլիոն 170 հազար ռուբլու դրամական եկամուտ։ Հաջողությունները լավ են նաև այս տարի։ Օրինակ. Հոկտեմբերի 1-ից մինչև մայիսի 1-ը մեր անասնապահները 100 հեկտար հողային տարածության դիմաց արտադրել են 321 ցենտներ կաթ, յուրաքանչյուր ֆուրաժային կովից կթել են 1.850 կիլոգրամ կաթ։

Շարունակելով զրույցը, ագիտատորը հանգամանորեն խոսում է մեր երկրի գյուղատնտեսության նշանավոր առաջավորների մասին։

— Երկրով մեկ,— ասում է նա,— փառաբանվում են Տամբովի մարզի Միչուրինսկ շրջանի Կոմինտերնի անվան կոլտնտեսության նախագահ Եվգենիա Իվանովնա Անդ-

րեւան և նրա ղեկավարած արտելի կոլտնտեսականները, որոնք երկրում առաջինը բարձրացրին մսի և կաթի արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու համաժողովրդական պայքարի դրոշը։ Եղբայրական Մոլդավիայի Չադր-Լունգի շրջանի կոլտնտեսականները գործի նկատմամբ ցուցաբերելով պետական մոտեցում և խորապես հասկանալով մեր ժողովրդի շահերն արձագանքեցին ընկ. Անդրեևայի նախաձեռնությանը և խոստացան 1957 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 60 ցենտներ միս, այդ թվում 100 հեկտար վարելահողի դիմաց՝ 54 ցենտներ խոզի միս, իսկ 1960 թվականին շրջանի կոլտնտեսությունները 100 հեկտար հողի դիմաց կստանան 150 ցենտներ միս։ Այդ պարտավորությունները հպարտության զգացումով են լցնում մեր սրտերը։

Մեր շրջանի կոլտնտեսություններն արձագանքելով չադր-լունգցիների կոչին և ցանկություն հայտնելով մրցել նրանց հետ, պարտավորվել են այս տարի 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 85 ցենտներ միս, այդ թվում 100 հեկտար վարելահողի դիմաց 60 ցենտներ խոզի միս, իսկ 100 հեկտար հողի դիմաց՝ 410 ցենտներ կաթ։ Այդ մրցության մեջ մեծ բաժին ունենք



նաև դուք, որ խոստացել եք 1957 թվականին 100 հեկտար հողի դիմաց արտադրել 750 ցենտներ կաթ, 130 ցենտներ միս, այդ թվում 100 հեկտար վարելահողի դիմաց՝ 70 ցենտներ խոզի միս։

— Խոսք ենք տվել, պետք է կատարենք,— պատասխանում են ունկնդիրները։

— Մեր պարտավորությունները կատարելու համար,— շարունակում է ագիտատորը,— մենք ունենք բոլոր անհրաժեշտ պայմանները։ Նախ այս տարի կոլտնտեսությունում նախորդ տարվա համեմատությամբ 30 տոկոսով ավելացել է կովերի գլխաքանակը։ Ալժրմվանից բտման տակ ենք դրել 500 գլուխ մանր և 100 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, բտման տակ ենք դրել նաև առաջին ծնից ստացած բոլոր խոճկորները։ Բացի այդ, ամառային արոտավայրերում կազմակերպելու ենք անասունների գիրացում։

Զրույցի ընթացքում ագիտատորն ունկնդիրների ուշադրությունը բևեռեց կերի կայուն բազա ստեղծելու վրա, որն անասնաբուծության մթերատվության բարձրացման հիմնական պայմանն է։ Դրա համար,— ասում է նա,— կոլտնտեսության վարչությունը նախատեսել է ընդարձակել առվույտի ցանքատարածությունները և բարե-

լավել նրա մշակությունը։ Ագիտատորը հիշեցնում է ունկնդիրներին, թե ինչպես անցյալ տարի բարելավելով առվույտի մշակությունը կոլտնտեսությունը հսկայական օգուտ ստացավ։ Օրինակ, անցյալ տարի մեր կոլտնտեսությունից Բ. Բարսեղյանի ղեկավարած բրիգադան առվույտի մշակությունը բարելավելու շնորհիվ, տարվա ընթացքում նույն տարածությունները հնձեց հինգ անգամ և ամեն մի հեկտարից նախատեսած 130 ցենտների դիմաց ստացավ 160 ցենտներ բերք։

Այնուհետև ագիտատորն ունկնդիրներին պատմում է առաջավոր անասնապահների աշխատանքի դրական փորձի մասին։

— Առաջավորների փորձը ցույց է տալիս,— ասում է նա,— որ բարձր կաթնատվության հասնելու համար անհրաժեշտ է կովերին ոչ միայն լավ կերակրել, այլև լավ խնամել։ Այդ կապակցությամբ նա մի շարք օրինակներ է բերում հենց իրենց կոլտնտեսությունից, նշելով, թե նրանցից ով ինչպես է պայքարում երկրին ավելի շատ միս և կաթ տալու համար։ Ագիտատորի զրույցի շուրջը բացվեց մտքերի աշխույժ փոխանակություն։

Կթվորուհի Ռ. Գադիշևան ասաց,— ես հուզմունքով կարդացի մեր կոլտնտեսության նախագահ Նազանի Գալստյանի և Տամբովի



մարզի Միչուրինսկ շրջանի Կոմինտերնի անվան կոլտնտեսության նախագահ Եվգենիա Անդրեևայի միջև փոխանակած հեռագրերը։ Ի պատասխան դրան ես խոստացել եմ այս տարի իմ խնամած յուրաքանչյուր կովից նախատեսված 3.300 կիլոգրամի դիմաց ստանալ 3.500 կիլոգրամ կաթ։

Նախրապահ Ա. Միքայելյանը, որը խնամում է 100 գլուխ բտվող խոշոր անասուն, պարտավորվում է նրանցից յուրաքանչյուրի օրական քաշաճը հասցնել 450—500 գրամի։ Խոզապահուհի Մ. Միքայելյանը պարտավորվում է խնամած 70 խոճկորների քաշը 7—8 ամսական հասակում հասցնել 80-ական կիլոգրամի։

— Անասնապահի ազնիվ աշխատանքը,— ասում է կթվորուհի Վ. Հարությունյանը,— հարգվում է ու լավ վարձատրվում։ Այդ մասին է վկայում այն, որ ես երկու անգամ մասնակցել եմ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին և միայն անցյալ տարվա վաստակած աշխօրերի դիմաց ստացել եմ 20 հազար 250 ռուբլի դրամ։ Մենք՝ անասնապահներս, մեր բոլոր ուժերը կգործադրենք երկրին ավելի շատ միս և կաթ տալու մասին մեր պարտիայի առաջադրած խնդիրները պատվով կատարելու համար։

---

# ՀՈՐԴԱՆԱՆ

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը անգլիական իմպերիալիստները անբաժան տիրապետություն էին հաստատել Մերձավոր ու Միջին Արևելքում։ Նրանք իրենց ձեռքումն էին կենտրոնացրել այդ երկրների նավթային արդյունաբերությունը, երկաթուղային ճանապարհները, կապի միջոցները, ինչպես նաև ներքին ու արտաքին առևտրի մոնոպոլ իրավունքները։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Անգլիան խիստ թուլացավ։ Օգտվելով Անգլիայի թուլացումից ամերիկյան իմպերիալիստները ներխուժեցին Անգլիայի գաղութները և այնտեղ սկսեցին ամրապնդել իրենց դիրքերը։

Մերձավոր և Միջին Արևելքի ընդարձակ շրջանը, վերջին ժամանակներս Անգլո-ամերիկյան դիվանագիտության և ռազմամոլների համար դարձել է ակտիվ գործողությունների ասպարեզ։

ԱՄՆ-ի իմպերիալիստական պլաններում



հատուկ տեղ է գրավում արաբական Հորդանան պետությունը։

Հորդանանն ընկնում է Հարավ Արևմտյան Ասիայում՝ Եգիպտոսի, Սաուդյան Արաբիայի, Իրաքի, Սիրիայի, Լիբանանի և Իսրայելի միջև։ Հենց այդ պատճառով էլ գաղութարարների կողմից այս երկիրը դիտվում է որպես ռազմա-ստրատեգիական կարևորագույն բազա Մերձավոր Արևելքում։

Մինչև առաջին համաշխարհային պատերազմը Հորդանանը գտնվում էր թուրքական լծի տակ։

1920 թվականին տխրահռչակ Սան-Ռեմոնի կոնֆերանսը մանդատ տվեց Անգլիային Հորդանանը կառավարելու։ Հորդանանի ժողովուրդը երկարատև պայքարից հետո 1946 թվականի մարտի 22-ին վերացրեց անգլիական մանդատը։

1949 թվականին Հորդանանին միացվեց Արաբական Պաղեստինը։

Հորդանանը ունի 100 հազար քառակուսի կիլոմետր տարածություն և մոտ 1,5 միլիոն բնակչություն։ Բնակչության հիմնական մասը կազմում են արաբները (սունիտտի), կան նաև չերքեզներ, հրեաներ և այլ ժողովուրդներ։

Բնակչությունը հիմնականում ապրում է գյուղերում։

Վարչական կարգը սահմանադրական միապետություն է։ Գոյություն ունի պառլամենտ՝ դեպուտատների պալատ և սենատ։ Ընտրական իրավունք ունեն միայն տղամարդիկ։ Սենատի անդամներին և կառավարության կազմը նշանակում է թագավորը։

Վարչական տեսակետից երկիրը բաժանվում է 8 նահանգների։ Մայրաքաղաքն է Ամմանը, որն ունի մոտ 175 հազար բնակիչ։

Երկրի հանքային հարստություններից հայտնի են՝ ֆոսֆորիտները։ Վերջին ժամանակներս հայտնաբերվել է նաև ուրան։

Գաղութարարների երկարամյա տիրապետության հետևանքով Հորդանանը մնացել է հետամնաց ագրարային երկիր։ Այստեղ հիմնականում զարգացած է տնայնագործությունը, գյուղատնտեսական հումքի վերամշակությունը։

Հորդանանը համարվում է անասնապահական երկիր, զարգացած է ոչխարաբուծությունը և ուղտաբուծությունը։ Հողը, որը պատկանում է խոշոր հողատերերին, մշակվում է հին նահապետական ձևով։ Ոռոգման ենթակա 500,000 հեկտար հողից փաստորեն ոռոգվում է միայն 28 հազար հեկտարը։ Մշակվում են՝ ցորեն, գարի և յուղատու այլ կուլտուրաներ։ Զբաղվում են նաև այգեգործությամբ։



Տարիներ շարունակ, իմպերիալիստական տերությունները և մասնավորապես ԱՄՆ-ը միշտ դավեր են լարել Հորդանանի ժողովրդի դեմ։

Քաղաքական մեծագույն իրադարձություն էր Հորդանանի պատմության մեջ, երբ 1956 թվականի նոյեմբերի 27-ին, պառլամենտը չեղյալ հայտարարեց անգլո-հորդանական 1921 թվականի ստրկացուցիչ պայմանագիրը, իսկ 1957 թվականի մարտի 13-ին 1948 թվականի անգլո-հորդանանյան ռազմական պայմանագիրը։

1957 թվականի ապրիլի 3-ին, Հորդանանի մինիստրների խորհուրդը որոշեց դիվանագիտական հարաբերություններ հաստատել Սովետական Միության հետ։ Անդրադառնալով ՍՍՌՄ-ի հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատելու հարցին Սուլեյման Նաբուլսին հայտարարել է. «Մենք որոշել ենք դիվանագիտական հարաբերություններ հաստատել Սովետական Միության հետ, որը մեր անկեղծ բարե-

կամն է ոչ թե այն բանի համար, որ մեզ կոմունիստներ է համարում, այլ այն պատճառով, որ մենք խսկական արաբներ ենք…»։

Հորդանանի կառավարության նման քաղաքականությունը պարզ է, որ ձեռնտու չէ Ամերիկյան իմպերիալիստներին։

Ահա թե ինչու ապրիլի առաջին տասնօրյակից սկսեցին գլուխ բարձրացնել ռեակցիոն տարրերը, որոնց օժանդակում էին ամերիկյան իմպերիալիստները։ «Թագավորին անհրաժեշտ են ավիններ» վկոփ կերպով հայտարարեց ամերիկյան չինովնիկներից մեկը։

Սուլեյման Նաբուլսի կառավարությունը ռեակցիոն տարրերը տապալեցին։ Թագավորի հանձնարարությամբ կառավարություն կազմեց Իբրահիմ Հաշիմը, որը անցյալներում գրավել է պրեմյեր-մինիստրի պոստը և ունի արևմտյան օրիենտացիա։ Այդ է ապացուցում այն, որ նրա կառավարության մեջ մտան բոլոր ռեակցիոն տարրերը, որոնց միջնորդությամբ Հուսեյին թագավորը ապրիլի 25-ին համաձայնվեց ընդունելու ամերիկյան այսպես կոչված օգնությունը։ Երկրում և արքունիքում վխտում են մեծաքանակ ամերիկացիներ, թղթակիցների անվան տակ, որոնք ղեկավարում են երկրում



անկարգությունները, տեռորիստական ակտեր են կատարում հայրենասերների դեմ, բանտերն են լցնում հազարավոր մարդկանց։ Ամմանի փողոցներում շրջում են տանկեր, զրահապատ մեքենաներ։

Այսպիսով պարզ է, որ ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականության գլխավոր նպատակն է ստիպել Հորդանանին ընդունելու «Էյզենհաուերի դոկտրինան» և միանալու Բաղդադի ռազմական պակտին։

Ամերիկյան իմպերիալիստները շտապ կարգով մշակել են աշխարհի այս մասում «ֆեդերացիա» ստեղծելու պլան, որի մեջ պետք է մտնեն Իրաքը, Սաուդյան Արաբիան և Հորդանանը։

Մեծ վտանգ է կախվել Հորդանանի ժողովրդի ազգային անկախության վրա։ Հորդանանում ստեղծված աննորմալ դրությունը չի կարող լուրջ անհանգստություն չպատճառել խաղաղասեր պետություններին, այդ թվում նաև Սովետական Միությանը։

Սովետական Միությունը պարզորեն տեսնում է, որ իմպերիալիստական տերությունների նպատակն է արաբական երկրներին գժտեցնել՝ բացահայտորեն հուսալով, որ այդպիսի պայմաններում ավելի

հեշտ կլինի արաբական ժողովուրդների վզին նորից գցել գաղութային ճնշման լուծը, կողոպտել նրանց հարստությունները, պահել նրանց ստրկական վիճակի մեջ։

Ամերիկյան իմպերիալիստներն իրենց նպատակին հասնելու, արաբական երկրներին ռազմական բլոկների մեջ քաշելու, էյզենհաուէրի դոկտրինան ընդունել տալու նպատակով իրենց վեցերորդ նավատորմն ուղարկեցին դեպի Միջերկրական ծովի արևելյան ափը, որը բացահայտորեն ռազմական ցույց է Արաբական արևելքի երկրների դեմ և է՛լ ավելի է սրում իրադրությունը։

Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

---



# ԷՍՊԵՐԱՆՏՈՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԼԵԶՈՒ Է

Վերջերս լայն հետաքրքրություն է առաջացել էսպերանտո օժանդակ միջազգային լեզվի նկատմամբ: Այդ լեզուն ուսումնասիրում են նաև մեր ռեսպուբլիկայում: Նախապատրաստական աշխատանքներ են տարվում հրատարակելու էսպերանտոյի ձեռնարկ և բառարան, ինչպես և լույս ընծայելու Ե. Չարենցի պոեմների ու բանաստեղծությունների միհատորյակը էսպերանտիստ Գ. Սևակի թարգմանությամբ:

Ստորև տպագրում ենք Լենինգրադի համալսարանի պրոֆեսոր Անդրեևի հոդվածն էսպերանտոյի նշանակության մասին:

*Միջազգային լեզուների պատմությունը սկիզբ է առել սրանից երեք հարյուրամյակ առաջ, երբ ֆրանսիական ականավոր գիտնական-լուսավորիչ Դեկարտն առաջ քաշեց մի այնպիսի լեզու ստեղծելու անհրաժեշտության խնդիրը, որն ավելի դյուրին լինի սովորելու հա-*

մար, քան կենդանի լեզուները կամ մեռած լատինական լեզուն, և հանդիսանա բոլոր ժողովուրդների հաղորդակցման միասնական միջոց։ Դեկարտն այդպիսի լեզվի ստեղծումը հնարավոր էր համարում հասկացությունների փիլիսոփայական դասակարգման և այդ հասկացությունները մաթեմատիկական սիստեմով նշելու հիման վրա։

Ինքը Դեկարտը չմշակեց միջազգային լեզվի նախագիծ, բայց նրա գաղափարներն ընկալվեցին և հետագայում առաջացրին «փիլիսոփայական լեզվի» ստեղծման մի շարք նախագծեր։ Բոլոր այդ նախագծերը մշակվել էին իրականում գոյություն ունեցող լեզուներից կտրված կերպով և հենց դրա համար էլ նախապես անհաջողության էին մատնված։ Սակայն երկու տեսակետից այդ նախագծերը շատ օգտակար եղան. նախ՝ նրանք ցույց տվեցին, որ պետք է ելնել կենդանի լեզուներից, երկրորդ՝ հասկացությունների ընդհանրական դասակարգման փորձերը հիրավի բեղմնավոր եղան և օգտագործվեցին կյանքում (ծովային ազդանշանման կոդի, գրադարանային տասնորդական դասակարգման համար և այլն)։

Առաջին մարդը, որ փորձեց միջազգային լեզու ստեղծել հենվելով կենդանի լեզվի բառերի վրա, գերմանացի քահանա Ի. Շլեյերն էր։ 1897 թվականին նրա ստեղծած Վոլապյուկ լեզուն ուներ շատ բարդ քերականություն, և որ գլխավորն է, նրա բառերը թեկուզ և վերցված էին անգլերեն, ֆրանսերեն,



գերմաներեն լեզուներից, բայց անճանաչելիության չափ փոխված էին։ Սկզբում Վոլապյուկը մեծ հետաքրքրություն առաջացրեց։ Բայց շատ շուտով պարզվեց, որ այն դժվար է ինչպես սովորելու, այնպես էլ բանավոր հաղորդակցման համար։

Այդ հարկադրեց միջազգային լեզվի գաղափարի կողմնակիցներին հարցի լուծման այլ ուղի փնտրել։ Վոլապյուկից հետո ստեղծվեցին միջազգային լեզվի ավելի քան 350 նախագիծ, բայց դրանցից միայն երկուսը որոշակի տարածում ստացան՝ Ինտերլինգվա և Էսպերանտո լեզուները։

Ինտերլինգվան ստեղծվել է մեր դարաշրջանի 40—50-ական թվականներին արևմտա-եվրոպական ու ամերիկյան լեզվաբանների մի կոլեկտիվի կողմից հատկապես գիտական հաղորդակցման նպատակների համար։ Այդ լեզուն ներկայումս օգտագործվում է եվրոպական և ամերիկյան ավելի քան երեսուն ժուռնալներում, գլխավորապես ռեզյումեների համար, այսինքն՝ գիտական հոդվածների եզրակացությունների համար։ Բանավոր հաղորդակցման համար Ինտերլինգվան մինչև հիմա չի կիրառվել։ Այն ավելի բարդ է, քան Էսպերանտոն։

Էսպերանտո լեզուն ստեղծված է Բելոստոկ քաղաքում ծնված ակնաբույժ Լյուդվիգ Զամենհոֆի կողմից։ Էսպերանտո լեզուն կառուցված է եվրոպական լեզուների (լատիներեն, ֆրանսերեն, անգլերեն, գերմաներեն, ռուսերեն) հիման վրա։

«Էսպերանտո» անունը թարգմանաբար նշանակում է «Հուսացող»։ Այդ ծածկանունով 1887 թվականին Զամենհոֆը լույս է ընծայել իր առաջին դասագիրքը։ Ռուսաստանը ոչ միայն եղել է այն երկիրը, որտեղ ծագել է էսպերանտոն, այլև նրա նախնական գործադրության ու տարածման երկիրը։ Էսպերանտոյի քերականությունը հիմնված է արևմտաեվրոպական լեզուների պարզեցված ու ընդհանրացված քերականական կանոնների վրա։ Այդ հեշտացնում է էսպերանտոյի սովորելը, մանավանդ նրանց համար, ովքեր գիտեն արևմտաեվրոպական լեզուներից որևէ մեկը։ Իր հերթին էսպերանտո լեզուն իմանալը հեշտացնում է օտար լեզուների ուսումնասիրությունը։

Էսպերանտոյի շատ բառեր հասկանալի են բոլոր լեզուներով առանց թարգմանելու. օրինակ՝ «կոմունիստո», «ռևոլյուցիո», «պարտիո», «տեատրո», «տելեֆոնո», «մոտորո» և այլն։ Մյուս բառերը միանգամից կարող են հասկանալի չլինել ռուսերեն խոսողների համար, բայց համարյա ճշտությամբ համապատասխանում են ֆրանսերեն, իտալերեն, գերմաներեն ու անգլերեն բառերին։

Էսպերանտոյում կան բառեր և ռուսերեն լեզվից։ Այսպիսով, էսպերանտոյում բացի միջազգային բառերից, որոնք ընդհանուր են աշխարհի լեզուների մեծամասնության համար, կան բառեր, որոնք վերցված են առանձին լեզուներից շատ քիչ փոխված ձևով։

Էսպերանտոն շատ ավելի հեշտ է յուրացնելու համար, քան կենդանի լեզուներից որևէ մեկը։ Այդ բացատրվում է նրանով, որ նրա քերականության կանոնները չափազանց պարզ են և բացառություն չգիտեն։ Այսպես, օրինակ, բոլոր գոյականները վերջանում են «օ», բոլոր ածականները՝ «ա», մակբայները՝ «ե», հրամայական եղանակը՝ «ի» տառով։ Էսպերանտոյում քերականական սեռեր չկան, բայերը փոխվում են միայն ըստ ժամանակի, բոլոր տառերը միշտ կարդացվում են միևնույն կերպ, շեշտը միշտ դրվում է նախավերջին վանկի վրա։



Բազմամյա փորձը ցույց է տվել, որ էսպերանտո լեզվին տիրապետելու համար պահանջվում է 5—10 անգամ ավելի քիչ ժամանակ, քան այնպիսի լեզուներ սովորելու համար ինչպես անգլերենը, ֆրանսերենը կամ գերմաներենը։ Էսպերանտո լեզվով բավականաչափ լավ խոսելու համար հարկավոր է այդ լեզվին հատկացնել 40—50 ժամ պարապմունք դասատուի հետ։

Միջազգային հաղորդակցման նպատակների համար նախանշված օժանդակ լեզուներից ամենից ավելի տարածվածը էսպերանտոն է։ Մոտ կես միլիոն մարդ, գլխավորապես Եվրոպայի ու Ամերիկայի երկրներում, ներկայումս տիրապետում է էսպերանտո լեզվին։ Սովետական Միության մեջ էսպերանտո լեզուն գիտեն մի քանի տասնյակ հազար մարդիկ (միայն Լենինգրադում ներկայումս գործում են էսպերանտոն ուսումնասիրող մոտ հիսուն խմբակ)։

Էսպերանտիստներն ակտիվ մասնակցում են խաղա-

ղության համար մղվող պայքարին։ Նրանց ազնիվ ջանքերը միավորելու համար ստեղծված է «Մոնդպացա էսպերանտա Մովադո» (ՄԷՄ) կազմակերպությունը՝ էսպերանտիստների համաշխարհային շարժումը խաղաղության համար։ Այդ կազմակերպությունը իր ազգային սեկցիաները կամ կոմիտեներն ունի ավելի քան քսանհինգ երկրում և հրատարակում է «Պացո» (խաղաղություն) միջազգային ժուռնալը, որը ակտիվ պայքար է վարում նոր պատերազմի հրձիգների, սպառազինության մրցավազքի դեմ, հանուն ատոմային ու ջրածնային զենքի արգելման, վիճելի բոլոր հարցերը բանակցությունների միջոցով լուծելու համար։ «Պացո»-ն հրատարակվում է հերթով զանազան երկրներում, ամեն մի ազգային կոմիտե հրատարակում է տարեկան մեկ-երկու համար։

Սովետական էսպերանտիստները սերտ կապեր են պահպանում խաղաղության համար պայքարող էսպերանտիստների համաշխարհային շարժման հետ, մասնակցում են խաղաղության կողմնակիցների շարժմանը՝ արտասահմանյան մասսայական կազմակերպությունների, կուլտուրայի տների և առանձին էսպերանտիստների հետ փոխադարձ կապեր ստեղծելու և նամակագրության միջոցով, իրենց ավանդն են մտցնում ժողովուրդների մերձեցման ու բարեկամության գործում, պատմում են սովետական մարդկանց կյանքի և աշխատանքի մասին, պայքարում են բուրժուական պրոպագանդայի զրպարտության դեմ։



Էսպերանտոն իրենց գործունեության համար օգտագործող մարդկանց մյուս միջազգային միությունը «Ունիվերսալա էսպերանտա Ասոցիո» (ՈՒԷԱ) ընդհանրական էսպերանտական Ասոցիացիա կազմակերպությունն է։ Այդ կազմակերպությունը, որն իր շարքերում ունի ավելի քան երեսուն հազար անդամ և ներկայացուցիչներ հինգ աշխարհամասերի 76 երկրներում, իրեն քաղաքականապես չեզոք է համարում։ Նրա նպատակը, ըստ կանոնադրության, Միավորված Ազգերի Կազմակերպությանը նպաստելն է և տարբեր լեզուներով խոսող մարդկանց միջև հաղորդակցումն ու փոխըմբռնումը հեշտացնելը։ 1954 թվականին ՅՈՒՆԵՍԿՈ-ն (Միավորված Ազգերի Կազմակերպության հատուկ հիմնարկներից մեկը կրթության, գիտության և կուլտուրայի հարցերի գծով) որոշել է ընդհանրական էսպերանտական Ասոցիացիան համարել կոնսուլտատիվ օրգան և նրան տալ մշտական ներկայացուցչության իրավունք։ Այդ որոշումն ընդունվել է այն բանից հետո, երբ ՅՈՒՆԵՍԿՈ-ն ստացել էր 16 միլիոն մարդու կողմից ստորագրված դիմում, որի մեջ կոչ էր արվում օգտագործել էսպերանտոն ժողովուրդների կապերն ամրապնդելու և զարգացնելու համար։

Ներկայումս էսպերանտո լեզվով հրատարակվում է ավելի քան 100 թերթ և ժուռնալ։ Յուրաքանչյուր տարի էսպերանտո լեզվով հրատարակվում են հարյուրավոր գրքեր ու բրոշյուրներ։ Լոնդոնի էսպերանտո գրադարանում պահվող էսպերանտոերեն հրատարակությունների

ընդհանուր թիվը գերազանցում է 35.000-ից։ Էսպերանտոերենի են թարգմանված համաշխարհային գրականության լավագույն երկերը՝ «Իլիականը», «Ոդիսականը», Պուշկինի, Լերմոնտովի, Գոգոլի, Տուրգենևի, Ֆուրմանովի, Մայակովսկու, Շեքսպիրի, Բայրոնի, Մոլիերի, Գյոթեի, Միցկևիչի, Լու Սինի և ուրիշ շատ գրողների երկերը։

Գոյություն ունի էսպերանտո լեզվով գրված օրիգինալ գրականություն՝ վեպեր, վիպակներ, պատմվածքներ, բանաստեղծություններ։

Էսպերանտոն լայնորեն օգտագործվում է ռադիոհաղորդումների համար։ Էսպերանտո լեզվով կանոնավոր հաղորդումներ են կատարում Եվրոպայի և Ամերիկայի 22 ռադիոկայաններ։ Էսպերանտոն լայն չափով օգտագործվում է նաև տուրիզմի ասպարեզում։ Բոլոր աշխարհամասերի ավելի քան 600 քաղաքներում հրատարակված են տուրիստական պրոսպեկտներ, իսկ տուրիստների սպասարկումն անգլերեն, ֆրանսերեն, իսպաներեն լեզուներից զատ կատարվում է նաև էսպերանտո լեզվով։

Ամենուրեք լայն տարածում է ստացել անհատական նամակագրությունը էսպերանտո լեզվով։ Գիտենալով այդ լեզուն, կարելի է թղթակից ունենալ աշխարհի յուրաքանչյուր երկրում։ Էսպերանտիստները պատմում են միմյանց իրենց կյանքի մասին, փոխանակում են գրքեր, նոտաներ, գեղարվեստական բացիկներ, դրոշմանիշներ, ժուռնալներ։



Վարշավայում 1955 թվականին տեղի ունեցած երիտասարդության հինգերորդ փեստիվալի մասնակիցների մեջ կային 120 էսպերանտիստներ։ Նրանք փեստիվալի մասնակիցների միակ խումբն էին կազմում, որը թարգմանիչների կարիք չուներ։ Ավելին. Վարշավայի փեստիվալին մասնակցած էսպերանտիստները շատ օգտակար միջնորդներ եղան տարբեր դելեգատների հաղորդակցման համար։ Դելեգատների յուրաքանչյուր խումբ, որն իր կազմում թեկուզ մեկ էսպերանտիստ ուներ, խսկույն ևեթ հնարավորություն էր ստանում բացատրվելու մյուսի հետ անկախ ազգությունից։

Երիտասարդության վեցերորդ համաշխարհային փեստիվալին, որը տեղի է ունենալու Մոսկվայում 1957 թվականին, ավելի շատ էսպերանտիստներ են լինելու։ Դրա համար էլ սովետական պատանիներն ու աղջիկներն այժմ արդեն ուսումնասիրում են էսպերանտո լեզուն։ Ներկայումս Սովետական Միության բոլոր խոշորագույն քաղաքներում՝ Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Կույբիշևում, Երևանում, Ռիգայում, Տալլինում և ուրիշ քաղաքներում ստեղծված են էսպերանտոն ուսումնասիրող խմբակներ, պատրաստվում է դասագրքերի ու բառարանների հրատարակությունը։

Պայքարելով ժողովուրդների միջև բարեկամական կապերի ամրապնդման ու ծավալման համար, սովետական մարդիկ իբրև լրացուցիչ միջոց օգտագործում են խաղաղության ու բարեկամության միջազգային օժանդակ լեզուն՝ էսպերանտոն։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈՒՆԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՅՈԹԵՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 8-ի համարում։*

Օրենք արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու մասին, *ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 11-ի համարում։*

Նոր էտապ տնտեսական շինարարության ղեկավարման գործում, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 12-ի առաջնորդող հոդվածը։*

## *2. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների Դիմումը Սովետական Միության բոլոր բանվորներին և բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։*



Օրենք արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու մասին, *ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 11-ի համարում։*

Ժողովրդական տնտեսության անշեղ վերելքի համար, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 7-ի առաջնորդողը։*

## *3. ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Ռևոլյուցիայի տարեդարձի մասին, *Երկեր, հատոր 28, էջ 159—180, Հայպետհրատ, 1951։*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

Դեպի Մեծ Հոկտեմբերի քառասնամյակը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 19-ի համարում։*

ՀԱՄԿԽ-ի Նախագահության Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի տոնակատարությունը նախապատրաստելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 9-ի համարում:*

*4. ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 11-ի համարում:*

Միլիոնների մրցությունը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 30-ի առաջնորդողը:*

*5. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ ԲՈԼՈՐ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻՆ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Համաժողովրդական պաշտպանության արժանի նախաձեռնություն, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 26-ի համարում:*

Ընկեր Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ նամակը Մոլդավական ՍՍՌ Չադր-Լունգի շրջանի պարտիական, սովետական և կոլտնտեսային մի խումբ աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 26-ի համարում:*

Շահումյանի, Հոկտեմբերյանի, Կալինինոյի շրջանների գյուղատնտեսության աշխատողների պարտավորու-



թյունները չադր-լունգցիների օրինակով ավելի շատ միս և կաթ ստանալու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 27-ի և 28-ի համարներում:*

*6. ԱՎԵԼԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Գյուղատնտեսության մեքենայացումը, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956 թ., էջ 94—97:*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ճառ Տաջիկական ՍՍՌ-ին Լենինի շքանշան հանձնելու կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 22-ի համարում:*

Մեքենայացիա և էլեկտրիֆիկացիա, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի 4-րդ համարում:*

*7. ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅԱՄԲ ՄՇԱԿԵՆՔ ԱՅԳԻՆԵՐԸ*

*(Զրույցի համար օգտագործել տեղական նյութեր)*

*8. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԽՆԱՄՔԸ ԱՐՈՏԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Գործի դնել մսի ու կաթի արտադրության ավելացման բոլոր ռեզերվները, *ճառ կենտրոնական սևահողային և ոչ սևահողային մարզերի գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի ապրիլի 3-ի և 7-ի համարներում:*





Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, *ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 88—93։*

Անասնաբուծություն, *նյութեր առաջավոր անասնապահների աշխատանքի փորձից, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի 4-րդ համարում։*

### *9. ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ*

*(Զրույցի համար օգտվել ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ և յոթերորդ սեսիաների նյութերից, տեղական փաստերից, ինչպես նաև «Ագիտատորի բլոկնոտ»-ի այս համարում զետեղված «Երեխաների կյանքի ու երջանկության համար» վերնագրով հոդվածից)։*

### *10. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ*

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Դիմումը Ամերիկայի Միացյալ Նահանգների Կոնգրեսին և Մեծ Բրիտանիայի պառլամենտին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 12-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ զրույցը ամերիկյան «Նյու-Յորք Թայմս» թերթի գլխավոր խմբագիր Տերներ Քեթլիջի հետ *1957 թվականի մայիսի 10-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի մայիսի 14-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 10 1957 г.

ՎՖ 05814 Պատվեր 407 Տիրաժ 8.590

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Ալավերդյանցի № 8։
Գինը 50 կոպ.